# ԱԳԻՏԱՏՈՐԻ ԲԼՈԿՆՈՏ





ՍԵՊՏԵՄԲԵՐ

17

1963

ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



СОДЕРЖАНИЕ




**Խմբագրության հասցեն**— *Երևան, ՀԿԿ Կենտկոմ, II հարկ, 71-րդ սենյակ, հեռախոս՝ 2—52—78։*

**Адрес редакции**—Ереван, ЦК КП Армении, II этаж, ком. 71, телефон 2-52-78.



Պրոլետարներ բոլոր երկրների, միացե՛ք

ԱԳԻՏԱՏՈՐԻ ԲԼՈԿՆՈՏ

**№ 17**
**ՍԵՊՏԵՄԲԵՐ**
**1963**

ՀԿԿ Կենտկոմի գաղափարական աշխատանքի բաժին

*Լույս է տեսնում ամիսը երկու անգամ*


ԱԳԻՏԱՑԻՈՆ ԱՇԽԱՏԱՆՔԻ ՓՈՐՁԻՑ

# ՆՐԱՆ ՍԻՐՈՎ ԵՆ ՍՊԱՍՈՒՄ

*Ամեն անգամ, երբ ագիտատոր Հրաչիկ Հովսեփյանը շտապում է իր ունկնդիրների մոտ, մտաբերում է այն օրը, երբ Երևանի էլեկտրալամպերի գործարանի պարտբյուրոն իրեն նոր հանձնարարություն տվեց։ Դա մեկ տարի առաջ էր... Ճիշտ է, մինչ այդ էլ նա երկար տարիներ կատարել էր ագիտատորի դժվար և պատասխանատու պարտականությունները։ Սակայն այս անգամ հարցը ուրիշ էր։ Եթե առաջ նա զրույցներ էր անց կացրել հենց գործարանում, համատեղ աշխատանքից շատ ծանոթ ունկնդիրների հետ, որոնց պատրաստականությունն ու հետաքրքրությունները քաջ հայտնի էին իրեն և իր հետաքրքիր զրույցներով արժանացել բանվորների համակրանքին, ապա այժմ նրան հանձնարարում էին ագիտացիոն-մասսայական աշխատանք տանել բնակչության շրջանում՝ ըստ բնակավայրի։ Արդյոք ինչպիսի՞ ունկնդիրներ է ունենալու ինքը։ Այս հարցի պատասխանը հայտնի չէր նրան։ Նա մտածում էր, թե կկարողանա՞ ամենատարբեր տարիքի, զբաղմունքի և հետաքրքրությունների տեր մարդկանց այդ խմբին գոհացնել։*

*Սովորական հարմարավետ բնակարանում (Գվարդիականների փողոց № 18 ա ) հավաքվել էին շենքի համարյա բոլոր բնակիչները։ Առաջին զրույցի ժամանակ ագիտատորը ունկնդիրներին բացատրեց իր ագիտացիոն աշխատանքի նպատակի մասին, եղավ յուրաքանչյուրի բնակարանում, հետաքրքրվեց նրանց կենցաղով։*

Հարց ու պատասխանի միջոցով նա ամփոփեց օրվա նորությունները։ Նա խոսում էր պարզ ու մատչելի, համոզված ու համոզիչ։

Ագիտատորը իր արտահայտիչ խոսքը համեմում էր իրենց գործարանից, շրջանից և մայրաքաղաքի ձեռնարկություններից վերցրած կոնկրետ փաստերով ու օրինակներով, որն ավելի հետաքրքիր էր դարձնում նրա զրույցը։ Ագիտատոր Հովսեփյանի զրույցների հիմնական թեման եղել է ՍՄԿՊ XXII համագումարի որոշումները, պարտիայի ծրագրի դրույթները։ Բնակիչները լսել են հետաքրքիր զրույցներ ամենատարբեր հարցերի շուրջը՝ խաղաղության համար ժողովուրդների պայքարի, մեր երկրի կարևորագույն իրադարձությունների և ընթացիկ քաղաքականության, սովետական օրենսդրության վերաբերյալ։ Այս օրերին ագիտատոր Հովսեփյանի զրույցների թեման է դարձել ՍՄԿՊ Կենտկոմի հունիսյան պլենումի որոշումներն ու նյութերը, ՍՄԿՊ Կենտկոմի քարտուղար Լ. Ֆ. Իլյիչովի զեկուցումը, Ն. Ս. Խրուշչովի ելույթը, ինչպես նաև ՍՄԿՊ Կենտկոմի բաց նամակը՝ ուղղված պարտիական կազմակերպություններին։

Նրա անցկացրած զրույցներից հետո բնակիչները իրենց հետաքրքրող բազմազան հարցեր են տալիս, որոնց ագիտատոր Հովսեփյանը պատասխանում է իրեն հատուկ աշխույժ և համոզիչ տոնով։ Իսկ իրենց հերթին բնակիչները հաճախ ագիտատորին պատմում են թաղամասի բարեկարգման, բնակիչների սպասարկման գործում գոյություն ունեցող թերությունների մասին և իրավացի պահանջներ ներկայացնում։ Ագիտատորը ունկնդիրների բարձրացրած հարցերը գրի է առնում և ներկայացնում գործարանի պարտբյուրոյին կամ դիրեկցիային, որպեսզի նրանք էլ շրջսովետի գործկոմի միջոցով լուծեն այդ խնդիրները։ Այդ կարգով վերացվել են շատ թերություններ։

Հերթական զրույցներից մեկի ժամանակ բնակիչներից մի քանիսը դժգոհություն հայտնեցին բնակելի շենքում գոյություն ունեցող շինարարական թերությունների, բնակարանների գազիֆիկացման աշխատանքները ձգձգելու համար։ Հովսեփյանը կազմակերպում է բնակիչների հանդիպում 26 կոմիսարների անվան շրջսովետի գործկոմի ղեկավար աշխատողների հետ։ Հանդիպման ժամանակ շրջսովետի պատասխանատու աշխատողները պատասխանեցին բնակիչներին հուզող







մի շարք հարցերի և կոնկրետ միջոցներ ձեռնարկեցին թերությունները վերացնելու համար։

Այսպիսով ունկնդիրները աստիճանաբար համոզվեցին, որ իրենց ագիտատորը ոչ միայն «խոսում է», այլև գործում, օգնում նրանց։ Այս բոլորի շնորհիվ ավելի է բարձրանում ագիտատորի հեղինակությունը, դա ավելի է մերձեցնում ագիտատորին և ունկնդիրներին, ավելի համոզիչ ու ներգործուն են դառնում ագիտատորի զրույցները։ Նա դարձել է յուրաքանչյուր բնակչի ցանկալի հյուրը։ Ագիտատոր Հովսեփյանը թաղամասի բնակիչների համար էքսկուրսիա է կազմակերպել դեպի իրենց գործարան, մատենադարան և ուրիշ տեղեր։

Ագիտատոր Հովսեփյանը իր զրույցներում միշտ ընդգծում է այն միտքը, որ սոցիալիստական հասարակարգի սկզբունքներից մեկը յուրաքանչյուր մարդու պարտադիր մասնակցությունն է հանրօգուտ աշխատանքին։ Նա հասել է այն բանին, որ բնակիչները ակտիվ մասնակցություն են ունենում հակահասարակական երևույթների դեմ մղվող պայքարին, իրենց բնակելի շենքում և բակում մաքրություն և կարգ ու կանոն հաստատելու գործին։

Բնակիչների մեջ ամենօրյա ագիտացիոն զրույցների հետ միաժամանակ ագիտատորը օգնում է ծնողներին, որպեսզի նրանք ավելի լավ զբաղվեն երեխաների դաստիարակության և ուսման հարցերով։ Քանի-քանի ծնողներ են հաճույքով լսել նրա խորհուրդները, և գոհ մնացել հմուտ ագիտատորի ջանասեր աշխատանքից։

Ագիտատոր Հովսեփյանը նպատակ է դրել իրեն հատկացված բնակելի շենքում քաղաքական ազդեցության ոլորտից դուրս չթողնել ոչ մի մարդու, յուրաքանչյուրին հասցնել կոմունիզմի կառուցման ծրագրի մեծ գաղափարները, ագիտացիան դարձնել ներգործուն ու նպատակասլաց։

Ագիտատոր Հովսեփյանին միանգամից չհաջողվեց գրավել բնակիչների ուշադրությունը, եղան դժվարություններ, սակայն համառ աշխատանքը ցանկալի արդյունքներ տվեց և այսօր նա իրավամբ համարվում է լավագույն ագիտատոր, որին բոլոր ունկնդիրները սիրով են սպասում։

Ս. ՍԱՂԱԹԵԼՅԱՆ
ՀԿՊ Երևանի քաղկոմի հրահանգիչ

# ԶՐՈՒՅՑ ԱՐՏԱԴՐԱՆՔԻ ԻՆՔՆԱՐԺԵՔԻ ՄԱՍԻՆ

*Մեր երկրի յուրաքանչյուր քաղաքացու աշխատանքային գործունեության նպատակն է՝ պատրաստել հասարակության համար անհրաժեշտ որևէ նյութական արժեք կամ նպաստել դրան։ Աշխատողների մի մասը երկրի ընդերքից արդյունահանում է հանքաքար, մյուսները հանքաքարից ձուլվածք են ստանում, մի ուրիշ խումբ այդ ձուլվածքը մշակում, մեքենա է պատրաստում, նրանց ընկերները ստեղծված մեքենաների օգնությամբ թել են մանում, կտոր գործում, հագուստ կարում և այսպես շարունակ։ Ուստի արդյունաբերական արտադրանք պատրաստելու համար անհրաժեշտ են նյութական, դրամական և աշխատանքային միջոցներ։ Վերցնենք բամբակյա գործվածքների արտադրությունը։ Գործվածք ստանալու համար անհրաժեշտ է նախ ձեռնարկությունն ունենա հումք՝ տվյալ դեպքում բամբակ, ապա այդ բամբակը մանելու, գզելու և գործելու մեքենաներ, վառելիք և էլեկտրաէներգիա՝ մեքենաներն աշխատեցնելու, ցեխերն ու գրասենյակները տաքացնելու և լուսավորելու համար, ձեռք բերի օժանդակ նյութեր, օրինակ՝ ներկեր, գործվածքը գեղեցիկ գույներով ներկելու համար և այլն։ Քանի որ արտադրության պրոցեսում մեքենաներն ու սարքավորումները, ինչպես նաև շենքերն ու կառուցվածքները սպառվում են աստիճանաբար և իրենց արժեքը փոխանցում արտադրանքին մաս-մաս, արտադրական բազմաթիվ ցիկլերի ընթացքում, ուստի դրանց մաշվածքը վերականգնելու համար ձեռնարկությունը հատուկ միջոցներ է առանձնացնում, որոնք կոչվում են ամորտիզացիոն հատկացումներ։ Այնուհետև, մեքենան, բամբակն ու մյուս նյութերն իրենք իրենց գործվածք դառնալ չեն կարող, բամբակը վերամշակում և գործվածք է դարձնում բանվորն իր աշխատանքի միջոցով։ Ուստի ձեռնարկությունը կատարում է աշխատավարձային ծախսեր ևս։ Գործվածքի ստացումից հետո անհրաժեշտ է այն իրացնել առևտրական կամ այլ կազմակերպությունների միջոցով, որի պատճառով էլ ձեռնարկությունը կատարում է արտադրանքի իրացման հետ կապված ծախսերը։ Ահա այս բոլոր ծախսերի գումարից կազմավորվում է ինքնարժեքը, որը հաշվարկվում է դրամով։*

*Ձեռնարկության կատարած յուրաքանչյուր ծախս իր նպատակն ունի։ Ելնելով դրանից, դրանք խմբավորվում են ինչպես ըստ իրենց տնտեսական հատկանիշի, այնպես էլ ըստ կալկուլյացիոն հոդվածների։ Արտադրության ծախսերն ըստ տնտեսական հատկանիշի, կամ ինչպես ընդունված է ասել, ըստ տնտեսական տարրերի, հետևյալն են՝ հումք և հիմնական նյութեր, օժանդակ նյութեր, վառելիք, էներգիա, ամորտիզացիա, աշխատավարձ և հատկացումներ սոցիալական ապահովագրությանը, դրամական այլ ծախսեր։*

*Ըստ տնտեսական տարրերի ինքնարժեքի հաշվարկման էությունն այն է, որ նույն ծախսի ցուցանիշի (հոդվածի) տակ միավորվում և գրանցվում են արտադրության տարբեր մասերում և տարբեր նպատակների համար կատարված նույնատիպ ծախսերը, որով և հնարավորություն է ստեղծվում պարզելու ձեռնարկության պահանջը նյութական և աշխատանքային ռեսուրսների ուղղությամբ, հսկողություն սահմանելու նրանց նպատակային օգտագործման վրա և ինքնարժեքի պլանը կապակցելու ձեռնարկության տեխարդֆինպլանի մյուս բաժինների հետ։ Օրինակ՝ «վառելիք և էլեկտրաէներգիա» ցուցանիշի տակ ցույց են տրվում ձեռնարկության ծախսած ամբողջ վառելիքն ու էլեկտրաէներգիան, անկախ նրանից թե նրանք օգտագործվել են արտադրության տեխնոլոգիական նպատակների, թե՞ արտադրական կորպուսները տաքացնելու կամ լուսավորելու համար։ Նույն կարգով հաշվարկվում են նաև մյուս հոդվածները։*

*Որպեսզի իմանանք տվյալ արտադրանքի ինքնարժեքի մեջ, որ ծախսն է գերակշռողը և հիմնականում ինչ ուղղությամբ պետք է տարվի ինքնարժեքի իջեցման համար մղվող պայքարը, վերլուծում ենք ինքնարժեքը և պարզում նրա մեջ մտնող յուրաքանչյուր առանձին ծախսի հարաբերությունը ծախսերի ամբողջ գումարի նկատմամբ։ Իհարկե այն արտադրության տարբեր ճյուղերում տարբեր է։ Օրինակ, հայթայթող արդյունաբերության ճյուղի արտադրանքի ինքնարժեքի մեջ գերակշռող ծախսը աշխատավարձն է, որովհետև հումքը երկրի ընդերքից հանելու համար մարդկային շատ աշխատանք է պահանջվում։ Ալյումինի և գունավոր մետալուրգիայի մի շարք ճյուղերի արտադրանքի ինքնար-*

ժեքի մեջ գերակշռում են էլեկտրաէներգիայի ծախսումները։

Արտադրանքի ինքնարժեքը փոփոխվում է հիմնականում աշխատանքի արտադրողականության բարձրացմանը և տեխնիկայի զարգացմանը զուգընթաց։ Եթե տվյալ ճյուղի կամ ձեռնարկության արտադրանքի ինքնարժեքի մեջ նվազում է աշխատավարձային ծախսումների բաժինը, իսկ նյութական ծախսումների բաժինն ավելանում է, նշանակում է տեղի է ունեցել աշխատատար պրոցեսների մեքենայացում, բարելավվել է արտադրության կազմակերպումը, ներդրվել են կատարելագործված հաստոցներ և այլն։

Որպեսզի պարզ լինի, թե ձեռնարկությունը որքան ծախս է կատարել թողարկված արտադրանքի մեկ միավորի վրա, սովորաբար արտադրության ծախսերը խմբավորում են նաև ըստ կալկուլյացիոն հոդվածների։ Այդ հոդվածներն են՝ հումք և նյութեր, վառելիք և էլեկտրաէներգիա (տեխնոլոգիական նպատակների համար), արտադրական բանվորների հիմնական և լրացուցիչ աշխատավարձ, սարքավորումների պահպանման և շահագործման ծախսեր, նոր արտադրանքների տեխնոլոգիան յուրացնելու ծախսեր, ցեխային ծախսեր, ընդհանուր գործարանային ծախսեր, կորուստներ խոտանից և արտադրական ծախսեր։ Կալկուլյացիոն «Հումք և նյութեր» հոդվածում հաշվարկվում է արտադրանքի արտադրության վրա անմիջականորեն ծախսված հումքի և հիմնական նյութերի, այդ թվում կիսաֆաբրիկատների արժեքը։ «Վառելիք և էլեկտրաէներգիա» հոդվածում հաշվի են առնվում միայն տեխնոլոգիական նպատակներով օգտագործված վառելիքը։ «Արտադրական բանվորների հիմնական աշխատավարձ» հոդվածում գրանցվում են հիմնական տեխնոլոգիական պրոցեսները կատարող բանվորների աշխատավարձը։ «Սարքավորումների պահպանման և շահագործման» հոդվածն ընդգրկում է այն նյութերի և աշխատավարձային ծախսումները, որոնք կապված են սարքավորումների ընթացիկ վերանորոգման, նրանց պահպանման և շահագործման հետ։ «Նոր արտադրանքի տեխնոլոգիան յուրացնելու» հոդվածը ներառնում է բոլոր այն ծախսերը, որոնք կապված են արտադրանքի նոր տեսակների արտադրությունը յուրացնելու հետ։ «Ցեխային ծախսեր» հոդվածում գրանցվում են ցեխի պահպանման և սպասարկման հետ կապված ծախսերը, ցեխային անձնակազմի աշխատավարձը, ցեխի աշխատանքի անվտանգությունն ապահովող ծախսերը և այլն։ «Ընդհանուր գործարանային» ծախսեր հոդվածում հաշվարկվում են արտադրության կարիքների համար կատարված ընդհանուր գործարանային բնույթ կրող ծախսերը։ Այս հոդվածում հաշվարկվում են նաև բոլոր տեսակի տույժերը, պահեստներում եղած խոտանը, պարապուրդներից առաջացած կորուստները և այլն։ «Խոտանից առաջացած կորուստներ» հոդվածը օգտագործվում է միայն փաստացի ինքնարժեքի հաշվարկման ժամանակ, որտեղ տրվում է վերջնականապես խոտանված արտադրանքի արժեքը, խոտանն ուղղելու համար կատարված ծախսերը և այլն։ Վերը նշված ծախսերի գումարը կազմում է ֆաբրիկագործարանային ինքնարժեքը։ Ֆաբրիկագործարանային ինքնարժեքի և արտադրական ծախսերի (որտեղ գրանցվում են արտադրանքի իրացման հետ կապված ծախսերը) գումարը կազմում է լրիվ կամ առևտրական ինքնարժեքը։

Արտադրանքի ինքնարժեքն արտահայտում է ձեռնարկության աշխատանքային գործունեության բոլոր կողմերը։ Նրա մեջ իր անմիջական արտահայտությունն է գտնում աշխատանքի արտադրողականության բարձրացումը, աշխատանքի և արտադրության կազմակերպման բարելավումը և այլն։ Ուստի, եթե ձեռնարկությունը կատարել է արտադրանքի ինքնարժեքի պլանը և նրա իջեցման առաջադրանքը, նշանակում է լավագույն ձևով է օգտագործել արտադրական կարողությունները ու հնարավորությունները, աշխատանքը կազմակերպել է ռացիոնալ, ներդրել է նոր տեխնիկա և վերակառուցել հինը, կրճատել է կորուստները և բանվորական ժամանակը արդյունավետ է օգտագործել։ Օրինակ, Երևանի Վ. Ի. Լենինի անվան մետաքսի կոմբինատը 1962 թվականին ոչ միայն կատարեց, այլև գերակատարեց ինքնարժեքի իջեցման առաջադրանքը, որի շնորհիվ ձեռնարկությունը շահույթի պլանը կատարեց 107,7 տոկոսով և ստացավ նախատեսվածից 74 հազար ռուբլի ավելի եկամուտ։ Արտադրանքի որակը բարձրացավ 0,5 տոկոսով, որով տնտեսվեց 15 հազար ռուբլի և պլանից դուրս թողարկվեց 674 մետր արտադրանք։ Կոմբինատի ձեռք բերած հաջողություններն արդյունք են աշխատանքի և արտադրողականության լավ կազմակերպման։ Անցյալ տարի ոլորող մեքենաների

արտադրողականության առաջադրանքը կատարվեց 111,3 տոկոսով, հենող մեքենաներինը՝ 118,1 տոկոսով, գործվածքայինը՝ 102,9 տոկոսով: Բանվորների պարապուրդները, նախորդ տարվա համեմատությամբ, կրճատվեցին 30 տոկոսով, աշխատանքի արտադրողականությունը բարձրացավ 4 տոկոսով: Մեծ չափերով տնտեսվեց հումքը, որը 1962 թվականին կազմեց 17 տոննա: Տնտեսված հումքի հաշվին կոմբինատը թողարկեց 160 հազար մետր լրացուցիչ արտադրանք, որը ձեռնարկության եկամուտները ավելացրեց մոտ 220 հազար ռուբլով: 1962 թվականին կոմբինատում ներդրվել է նոր տեխնիկա և վերակառուցվել հինը: Օրինակ, արտադրանքը դրոշմելու պրոցեսի մեքենայացումը արտադրանքի ինքնարժեքն իջեցրեց 54,2 հազար ռուբլով, և այդ հոգնեցուցիչ աշխատանքից ազատեց 30 բանվոր:

Բայց այդպես չէ դրությունը Երևանի Մայիսյան ապստամբության անվան տեքստիլ կոմբինատում, որը 1962 թվականին չկատարեց ինքնարժեքի իջեցման առաջադրանքը: Ապրանքային արտադրանքի մեկ ռուբլուն ընկնող ծախսերը թանկացան մոտ 2 կոպեկով, որի հետևանքով ձեռնարկությունը կրեց 674,1 հազար ռուբլու վնաս: Ըստ որում, միայն աշխատավարձի գծով գերածախսը կազմեց 275,2 հազար ռուբլի: Վատ աշխատանքի համար վճարած տուգանքներն ու տույժերը հասան 71,9 հազար ռուբլու և այլն: Բանվորների պարապուրդները կազմեցին 10—16 տոկոս, հաստոցներն օգտագործվել են թերբեռնվածությամբ և այլն:

Ուրեմն, որքան ցածր է արտադրանքի ինքնարժեքը, այնքան լավ է աշխատել տվյալ ձեռնարկությունը: Հենց դրա համար էլ արտադրանքի ինքնարժեքը համարվում է ձեռնարկության աշխատանքների որակին արտահայտող հայելին:

Ս. ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ
Հայկական ՍՍՌ ԳԱ-ի տնտեսագիտական ինստիտուտի գիտաշխատող



# ԿՈՒԼՏՈՒՐԱՅԻ ԱՃԸ ՄԵՐ ԵՐԿՐՈՒՄ

(Թվեր և փաստեր)

Սովետական երկիրը չտեսնված հաջողությունների է հասել գիտության, կուլտուրայի և ժողովրդական տնտեսության բոլոր բնագավառների զարգացման գործում: Ահա թվեր ու փաստեր այդ մասին:

✪ Վերջին տասը տարում ավելի քան 9 միլիոն երեխաներ էին սովորում նոր դպրոցներում: Սովետական Միությունում այժմ գործում են 220 հազար հանրակրթական դպրոց և 4 հազարից ավելի բարձրագույն ու միջնակարգ մասնագիտական ուսումնական հաստատություն: Այժմ բարձրագույն դպրոցներում սովորում են գրեթե 3 միլիոն ուսանողներ, որոնց կեսը՝ առանց արտադրությունից կտրվելու:

ԵՐԿԻՐԸ ՍՈՎՈՐՈՒՄ Է
ՍՈՎԵՏԱԿԱՆ ՄԻՈՒԹՅՈՒՆՈՒՄ ՈՒՍՈՒՑՄԱՆ
ԶԱՆԱԶԱՆ ԲՆԱԳԱՎԱՌՆԵՐՈՒՄ
սովորում են
60.000.000
ՄԱՐԴ
կամ ամբողջ բնակչության
քառորդից ավելին

✪ Այս տարի բարձրագույն ուսումնական հաստատությունները տվեցին ավելի քան 320 հազար մասնագետ: Ընդամենը ժողովրդական տնտեսությունը ստացավ բարձրագույն և միջնակարգ մասնագիտական կրթությամբ ավելի քան 800 հազար մասնագետ:

✪ Վերջին տասնամյակում կառուցվել են նոր մանկապարտեզներ ու մանկամսուրներ մոտավորապես 3 միլիոն երեխաների համար: Անցյալ տարվա առաջին կիսամյակի համեմատությամբ ավելի քան

600 հազարով ավելացել է նախադպրոցական հիմնարկներում երեխաների թիվը և այժմ հասել է 6 միլիոնի։

✪ Բանվորներն ու գյուղացիները իրենց կուլտուրական հանգիստն են անցկացնում քաղաքներում ու գյուղերում կառուցված բազմաթիվ նոր ակումբներում, թատրոններում, կուլտուրայի տներում ու գրադարաններում։ Մեր երկրում կա 380 հազարից ավելի գրադարան, 130 հազար ակումբ և կուլտուրայի տուն, թանգարան, թատրոն և ֆիլհարմոնիա։

✪ Այս վերջին տասնամյակը հանդիսացավ գիտության ու տեխնիկայի առաջադիմության սրընթաց թռիչքի տասնամյակ, որն աշխարհին ապշեցրեց իր տիեզերական անհունները թափանցելու մեծ կարողությամբ։

✪ Մեր երկրում կա 4.476 գիտական հիմնարկ, որից 1.911-ը գիտահետազոտական ինստիտուտ են։ Գիտական աշխատանքներով զբաղվողների թիվը մինչև այս տարվա սկիզբը կազմում էր 525 հազար մարդ։

✪ Միայն Սովետական Միությունում տպագրվում է աշխարհում հրատարակվող գրքերի ու բրոշյուրների հինգերորդ մասը։

✪ Վերջին 1Տ տարում ՍՍՌՄ-ում հրատարակվել է ավելի քան 11 միլիարդ գիրք։

✪ Ամեն տարի մեր երեխաները ստանում են բազմաթիվ հետաքրքիր, գրավիչ և հրապուրիչ գրքեր, որոնց հրատարակչությամբ զբաղվում է մեծ կազմակերպություն՝ մանկական հրատարակչությունը, որը ամեն տարի հրատարակում է ավելի քան 100 միլիոն մանկական գիրք։

✪ Ամեն տարի սովետական պետությունը գիտության, կուլտուրայի և կրթության կարիքների համար ծախսում է շուրջ 15 միլիարդ ռուբլի։

✪ Այս տարի Մոսկվայի դպրոցներում, տեխնիկումներում, բարձրագույն ուսումնական հաստատություններում սովորում են մոտավորապես 1 միլիոն 700 հազար մարդ, այսինքն Մոսկվայի բնակչության սովորելու ենթակա մոտ 40 տոկոսը։

✪ Միայն Ուկրաինայում հետպատերազմյան տարիներին կառուցվել է 9 հազար դպրոց և 57 հազար դասասենյակ, որտեղ սովորում են 6 միլիոն 800 հազար դպրոցականներ։

✪ Մեծ ուշադրություն է դարձվում, առանց արտադրությունից կտրվելու բարձրագույն մասնագիտական կրթություն ձեռք բերելու վրա։ Դա հնարավորություն է տալիս և՛ աշխատել և՛ սովորել երեկոյան կամ հեռակա բաժիններում։ Այժմ բուհերի և տեխնիկումների ուսանողների կեսը սովորում են երեկոյան և հեռակա բաժիններում։

✪ Բարձրագույն ուսումնական հաստատությունները ունեն լավագույն պրոֆեսորա-դասախոսական կազմ, որոնց թիվը հասնում է



180 հազարի։ Բուհերում ստեղծված են գիտության վերջին նվաճումներով հագեցված լաբորատորիաներ։

✪ Այս տարի ուսուցման բոլոր ձևերում ընդգրկված են ավելի քան 60 միլիոն մարդ, որից 49,5 միլիոնը սովորում են հանրակրթական դպրոցներում, բարձրագույն և միջնակարգ մասնագիտական ուսումնական հաստատություններում։

✪ Միայն գիշերօթիկ և երկարօրյա դպրոցներում այժմ սովորում են 2 միլիոնից ավելի աշակերտ։

✪ Սովետական Միության բարձրագույն ուսումնական հաստատություններում սովորում են մոտ 3 միլիոն ուսանող, որը 404 հազարով ավել է անցյալ տարվա սովորողների թվից։




✪ Այս տարի միջնակարգ կրթության ատեստատ ստացան 900 հազար աշակերտ, որից 440 հազարը ավարտել են քաղաքի և գյուղերի դպրոցները։

✪ Հսկայական չափերով զարգացել է կինոարտադրությունը։ Այժմ արտադրվում են ավելի շատ և գաղափարապես հագեցված գեղարվեստական կինոնկարներ։ Միայն վերջին 5 տարում մեր երկրի կինոստուդիաները թողարկել են 510 լիամետրաժ գեղարվեստական կինոնկարներ, չհաշված հարյուրավոր կինոժուռնալներն ու խրոնիկալ և գիտահանրամատչելի ֆիլմերը։

✪ Արագ թափով աճում է նաև կինոցանցը, որը անցել է յոթնամյակով նախատեսված պլանից։ Ընթացիկ տարվա սկզբին արդեն մեր երկրում հաշվվում էր 120 հազար կինոթատրոն և կինո-

սարքավորում, որից 20 հազարը քաղաքներում, 100 հազարը՝ գյուղական վայրերում։

✪ Վերջին կիսամյակում կինոսարքերի թիվը ավելացել է գրեթե 3 հազարով և հասել 123 հազարի։ Կիսամյակում կինոհանդիսատեսների թիվը հասել է 2 միլիարդի։ Մեր երկրում ամեն օր կինոֆիլմ է դիտում 11 միլիոն մարդ։

✪ Ցարական Ռուսաստանի այնպիսի հետամնաց ծայրամաս, ինչպիսին Կալմիկյան երկրամասն էր, սովետական կարգերի շնորհիվ այժմ դարձել է ծաղկուն երկրամաս։ Կալմիկիայի յուրաքանչյուր 1.000 բնակչին ընկնում է 28 բարձրագույն և միջնակարգ կրթությամբ մասնագետ։

✪ Սովետական Թաթարիայի յուրաքանչյուր 1.000 բնակչին ընկնում է 46 ուսանող, որը շատ է կապիտալիստական ամենազարգացած երկրների ցուցանիշներից։

✪ Մեծ են կուլտուրայի ասպարեզում նաև Սովետական Հայաստանում ձեռք բերված նվաճումները։ Մեր ռեսպուբլիկայի յուրաքանչյուր 4 հոգուն ընկնում է մեկ սովորող։ Ռեսպուբլիկայի տարբեր ուսումնական հաստատություններում այժմ սովորում են ավելի քան 457 հազար մարդ, այսինքն բնակչության մոտ 23 տոկոսը։

✪ Հայաստանում բարձրագույն ուսումնական հաստատություններում սովորում է համարյա 26 հազար ուսանող, որը անցյալ տարվա համեմատությամբ ավել է 3,8 հազարով։

✪ Ընթացիկ տարում մեր ռեսպուբլիկայի բարձրագույն ուսումնական հաստատությունները տվեցին ավելի քան 3,2 հազար մասնագետ, իսկ միջնակարգ մասնագիտական ուսումնական հաստատությունները՝ ավելի քան 3,5 հազար։ Այսպիսով ժողովրդական տնտեսությունը ստացավ բարձրագույն և միջնակարգ մասնագիտական կրթությամբ մոտ 7 հազար մասնագետ։

✪ Սովետական Հայաստանում այժմ գործում են 85 գիտական հիմնարկություններ, որից 64-ը գիտահետազոտական ինստիտուտ՝ իրենց ֆիլիալներով։ Գիտական աշխատանքներ են կատարվում նաև 11 բարձրագույն ուսումնական հաստատություններում։ Գիտական աշխատանքով զբաղված է 6.191 մարդ։

---

# ՓԱՅԼՈՒՆ ՀԱՋՈՂՈՒԹՅՈՒՆՆԵՐ

(Թվեր և փաստեր)

Կոմունիստական պարտիայի ամենօրյա հոգատարության շնորհիվ ծաղկում և է՛լ ավելի է զարգանում Սովետական Հայաստանի ժողովրդական կրթությունը։ Ամեն տարի կառուցվում են նոր դպրոցներ, ուսումնական արհեստանոցներ, որտեղ աշակերտները ստանում են կայուն և խոր գիտելիքներ։ Հաջողությամբ է կենսագործվում աշակերտների պոլիտեխնիկ ուսուցումը։

✕ 1962—63 ուսումնական տարում մեր ռեսպուբլիկայում գործում էին 358 արտադրական ուսուցմամբ միջնակարգ և 716 ութամյա դպրոցներ։ Գյուղական վայրերում գործում էին 193 արտադրական ուսուցմամբ միջնակարգ դպրոցներ։

✕ Աննախընթաց կերպով աճել է ռեսպուբլիկայի դպրոցներում սովորողների թիվը։ Եթե 1958—59 ուսումնական տարում այն կազմում էր 274 հազար 266, ապա 1962—63 ուսումնական տարում ռեսպուբլիկայի դպրոցներում սովորողների թիվը հասավ 385 հազար 897-ի։

✕ Այս՝ 1963—64 ուսումնական տարում ռեսպուբլիկայում գործում են 164 տարրական, 742 ութամյա և 456 արտադրական ուսուցմամբ միջնակարգ դպրոցներ, ընդամենը՝ 1 274, ուր սովորելու են 419 հազար 500 աշակերտներ։

✕ Այս ուսումնական տարում միայն առաջին դասարան են ընդունվելու 58.100 երեխաներ։ Իսկ աշակերտության ընդհանուր թիվը անցյալ ուսումնական տարվա համեմատությամբ ավելանալու է ավելի քան 34 հազարով։

✕ Դպրոցի վերակառուցման մասին օրենքի ընդունումից հետո ռեսպուբլիկայի դպրոցներում մեծացել է ութամյա և արտադրական ուսուցմամբ միջնակարգ դպրոցների թիվը և նրանցում սովորող աշակերտների քանակը։ Եթե 1958—59 ուսումնական տարում ռեսպուբլիկայի 8-րդ դասարաններում սովորում էին ընդամենը 13 հազար աշակերտներ, ապա 1962—63 ուստարում նույն դասարաններում սովորում էին 25 հազար 896 աշակերտ։ Այժմ բոլոր միջնակարգ դպրոցների 9—11 դասարաններում սովորում են 26062 աշակերտ։

✕ Միայն 1962—63 ուսումնական տարում ռեսպուբլիկայի դպրոցների 3.618 շրջանավարտներ ստացել են տարբեր մասնագետների որակավորում։

✕ Սովորողների արտադրական ուսուցումն ու արտադրական աշխատանքները էլ ավելի լավ հիմքերի վրա դնելու նպատակով Հայաստանի ժողովրդական տնտեսության ձեռնարկությունները քաղաքներում կազմակերպել են 10 ուսումնական ցեխեր, ուր աշա-

կերտների համար առանձնացվել են 415 բանվորական տեղեր։ Այդ նպատակով դպրոցներում կազմակերպված է 57 ձևի մասնագիտությունների ուսուցում։

✕ Արտադրական ուսուցման գծով կազմվել, թարգմանվել ու հրատարակվել է շուրջ 50 անուն դասագիրք և ծրագրեր։ Ավելի քան 15 հազար աշակերտներ մասնագիտանում են արդյունաբերության, գյուղատնտեսության, շինարարության և այլ մասնագիտությունների գծով։

✕ Սովորող երիտասարդության մեջ դեպի արտադրական ուսուցումն ու արտադրողական աշխատանքները սեր զարգացնելու և նրանցից կոմունիզմի ակտիվ կառուցողներ դաստիարակելու գործում մեծ նշանակություն ունեն աշակերտական արտադրական բրիգադները։ Այժմ մեր ռեսպուբլիկայում գործում են 140 աշակերտական արտադրական բրիգադներ, որոնց մասնակցում են 6.100 դպրոցականներ։

✕ Դպրոցի վերակառուցման ընթացքում ռեսպուբլիկայում կառուցվել ու շահագործման են հանձնվել 146 դպրոցական նոր շենքեր։ Միայն այս՝ 1963—64 ուսումնական տարում դպրոցները կստանան 27 շենք, 8 օժանդակ շենք և գիշերօթիկ 4 դպրոցի նոր շենքեր։

✕ Դպրոցներին կից գործող աշակերտական հանրակացարաններում 1962—63 ուստարում ապրում ու սովորում էին 2.064 աշակերտներ։

✕ Ռեսպուբլիկայում այժմ 117 դպրոցներ աշխատում են առանց երկտարեցիների։ Ավելի քան 700 ուսուցիչներ վերջին երեք տարիների ընթացքում չեն տվել ոչ մի երկտարեցի։

✕ Այժմ մեր ռեսպուբլիկայում գործում է 28 գիշերօթիկ դպրոց, ուր սովորում են ավելի քան 9.600 աշակերտ։ 1963—64 ուսումնական տարում ռեսպուբլիկայում գործելու են 18 երկարօրյա դպրոց և բազմաթիվ երկարօրյա խմբեր, ուր ընդգրկվելու է մոտ 10.000 աշակերտ։

✕ Նոր երկարօրյա դպրոցներ են բացվելու Երևանում, Լենինականում, Անիում, Հոկտեմբերյանում, Նոյեմբերյանում և Ստեփանավանում։

✕ 1963—64 ուսումնական տարում աճելու է բանվորական և գյուղերի դպրոցներում սովորողների թիվը։ Եթե այդ տիպի դպրոցներում 1958—59 ուսումնական տարում սովորում էին 14.045 մարդ, իսկ 1962—63 ուսումնական տարում 24 հազար 521, ապա նոր՝ 1963—64 ուստարում այդ դպրոցներում սովորելու են գրեթե 31 հազար բանվոր-ծառայողներ ու կոլտնտեսականներ։

✕ Մեր ռեսպուբլիկայի դպրոցներում այժմ աշխատում են 23.315 ուսուցիչ, որոնցից միայն բարձրագույն կրթություն ունեն 12.040 ուսուցիչներ։

—•—



# ԲՈՒԼՂԱՐԱԿԱՆ ԺՈՂՈՎՐԴԱԿԱՆ ՌԵՍՊՈՒԲԼԻԿԱՅԻ ՆՎԱՃՈՒՄՆԵՐԸ

(Ազատագրման 19-րդ տարեդարձի առթիվ)

Հարյուրավոր տարիների ընթացքում բուլղար ժողովրդի մեծ ձգտումն է եղել փրկել իր երկիրը օտարերկրյա հափշտակիչներից և տեղական շահագործողներից։ Բուլղար ժողովրդի երազանքը իրականացավ 19 տարի առաջ։ 1944 թվականի սեպտեմբերի սկզբին Սովետական բանակի հաղթական հարձակումը փշրեց ֆաշիստական օկուպացիայի ամբողջ սիստեմը։ Ռազմական բնագծերը արագ տեղափոխվեցին դեպի արևմուտք։ Սեպտեմբերի 8-ի լույս 9-ի գիշերը Բուլղարիայի մայրաքաղաք Սոֆիայի հայրենասերներն ապստամբություն բարձրացրին։ Դեպքերը ծավալվում էին կայծակի արագությամբ։ Ապստամբները գրոհեցին ռեակցիայի պատվար՝ ռազմական մինիստրության վրա։ Սեպտեմբերի 9-ի վաղ առավոտյան Սոֆիայի վրա շողշողաց ազատության արշալույսը։ Եթեր սլացան հայրենական ճակատի կառավարության դեկլարացիայի հուզիչ խոսքերը՝ «Ժողովրդա-դեմոկրատական ռևոլյուցիան Բուլղարիայում հաղթանակեց»։

Եղբայրական բուլղար ժողովրդի պատմության մեջ նոր դարաշրջան սկսվեց։ Մեկընդմիշտ դեն նետելով կեղեքողներին, բուլղարական ժողովուրդը այսօր դարձել է իր երջանիկ կյանքի լիակատար կերտողը։ Պատմական կարճ ժամանակամիջոցում Բուլղարիայի աշխատավորները հասել են աքանչելի հաջողությունների։ Ժողովրդական իշխանության տարիներին Բուլղարիայում իրականացվեցին ռևոլյուցիոն խոր փոփոխություններ՝ էկոնոմիկայի բնագավառում, քաղաքական ու կուլտուրական կյանքում։ Արմատական փոփոխություններ տեղի ունեցան բուլղարական հասարակյ-

նության դասակարգային կյանքում։ Բանվորների ու գյուղացիների ծոցից ելած մարդիկ ղեկավարում են Բուլղարիայի տնտեսական ու կուլտուրական կյանքն անհամեմատ ավելի լավ, քան նրա անցյալի տերերը՝ կապիտալիստները։

Դիմիտրովգրադի քիմկոմբինատը ամբողջ երկրի հպարտությունն է։ Նրա հիմնական արտադրությունը արհեստական պարարտանյութերն են, որոնց կարիքն են զգում ռեսպուբլիկայի հողագործական կոոպերատիվները։

Քիմիական կոմբինատը սովետա-բուլղարական բարեկամության սիրասուն զավակն է։ Նրա բոլոր ցեխերում աշխատում են սովետական մեքենաներն ու սարքավորումները։ Այդ ձեռնարկությունը կառուցված է տեխնիկայի վերջին խոսքով։

Բուլղարական պողպատ, բուլղարական չուգուն... Այդ չկար առաջներում՝ կապիտալիստական կարգերի ժամանակ։ Իսկ այժմ Դիմիտրովո քաղաքի արվարձանում երկինքը գիշեր ու ցերեկ լուսավորվում է մարտենյան ու դոմենյան վառարանների բոնկումներից։ Այստեղ Վլադիմիր Իլյիչ Լենինի անվան գործարանը բուլղարական սև մետալուրգիայի առաջնեկը, ռեսպուբլիկայի ձեռնարկություններին մատակարարում է լավորակ մետաղ։

Իսկ երկրի մյուս մասում՝ արևելքում, լայն ճակատով կատարվում է աղահանքերի շահագործումը։ Այստեղից հումք է ուղարկվում Կարլ Մարքսի անվան սոդայի գործարանը։

Երեք հազար տոննա ջրային տարողությամբ ծովային նավեր և երկաթուղային վագոններ, հացահատիկ հավաքող կոմբայններ և հզոր գոլորշակաթսաներ, զանազան դազգահներ, էլեկտրասարքավորումներ և արդյունաբերական ապրանքների այլ տեսակներ. այս բոլորը արտադրում է այսօր Բուլղարիայի երիտասարդ ինդուստրիան։ Եվ այժմ Բուլղարիայում չկա գրեթե այնպիսի անկյուն, որտեղ արդյունաբերությունը չզարգանա։ 1962 թվականին Բուլղարիայի արդյունաբերական ապրանքների արտադրությունը, 1961 թվականի համեմատությամբ, աճել է 11,1 տոկոսով։ Այժմ բուլղարական արդյունաբերությունը մեկ ամսվա ընթացքում տալիս է այնքան արտադրանք, որքան տվել են Բուլղարիայի բոլոր ձեռնարկություններն ամբողջ 1939 թվականին։





Խոշոր նվաճումներ են ձեռք բերվել գունավոր մետալուրգիայի զարգացման ասպարեզում։ Կապարի արտադրությամբ Բուլղարիան այժմ առաջին տեղն է գրավում Եվրոպայում։

Ժողովրդական իշխանության տարիներին լայն զարգացում է ստացել մեքենաշինությունը։

Բնակչության մեկ շնչին ընկնող քարածխի արտադրությամբ Բուլղարիան իրենից ետ է թողել Իտալիային, Ավստրիային և մի շարք այլ կապիտալիստական երկրների։

Արագ աճ է նկատվում էլեկտրաէներգիայի արտադրության բնագավառում։ 1962 թ. Բուլղարիայում արտադրվել է 23 անգամ ավելի էլեկտրաէներգիա, քան 1939 թվականին։

Մինչպատերազմյան տարիների համեմատությամբ ռեսպուբլիկայում այժմ 4—5 անգամ շատ բամբակյա և 2 անգամ շատ բրդյա գործվածքեղեն է արտադրվում։

Զգալի վերելք է ապրում սննդի արդյունաբերությունը։ Այն բնակչությանը տալիս է 4 անգամ շատ շաքար, 17 անգամ շատ պահածոներ, քան 1939 թվականին։

Մեծ են հաջողությունները գյուղատնտեսության մեջ։ Բուլղարական Ժողովրդական Ռեսպուբլիկան Եվրոպայում երկրորդ երկիրն է, Սովետական Միությունից հետո, որտեղ լրիվ հաղթանակել են սոցիալիստական արտադրահարաբերությունները գյուղում։

Բուլղարիան խաղողի մշակությամբ հայտնի է երկրի սահմաններից շատ հեռու։ Նրա մեղմ ու տաք բնական կլիմայական պայմաններում աճեցվում է թանկարժեք տեսակի ծխախոտ, իսկ Կազանլըկի հովտում մեծ քանակությամբ վարդի բերք է աճեցվում։ Վարդի ծաղկաթերթիկներից պատրաստվում է եթերային յուղ, որը օգտագործվում է պարֆյումերային արդյունաբերության մեջ։ Այդ եթերային յուղը, որի մեկ կիլոգրամը ստացվում է երեք տոննա ծաղկաթերթիկներից, թանկարժեք նյութ է։ Բացի դրանից գյուղատնտեսության մեջ մշակվում է արևածաղիկ, բամբակ, շաքարի ճակնդեղ, բանջարա-բոստանային կուլտուրաներ։ Անասնապահության գլխավոր ճյուղերն են կովաբուծությունը, ոչխարաբուծությունը և խոզաբուծությունը։

Ժողովրդական իշխանության տարիներին վերակառուցվել, բարեկարգվել ու գեղեցիկ տեսք են ընդունել Բուլղարիայի քաղաքներն ու գյուղերը։

Բուլղարական Ժողովրդական Ռեսպուբլիկայի մայրաքաղաք Սոֆիան, որն իրավամբ անվանվում է «քաղաք-պարտեզ», միաժամանակ հանդիսանում է ռեսպուբլիկայի արդյունաբերական խոշորագույն կենտրոնը։ Նրա ձեռնարկությունները տալիս են Բուլղարիայում արտադրվող ամբողջ գործարանային արտադրության չորրորդ մասը։ Արդյունաբերության մեջ զբաղված է մայրաքաղաքի բնակչության կեսը։

Ո՞վ չի լսել, օրինակ, Դիմիտրովգրադի մասին։ Այդ սքանչելի նորակառույցը բուլղարական երիտասարդության հայրենանվեր աշխատանքի արդյունքն է։ Ամեն ինչ նոր է այդ քաղաքում։ Դիմիտրովգրադը կառուցվում է խիստ մշակված ճարտարապետական պլանով։ Այստեղ հստակ կերպով զատված են բնակելի և արդյունաբերական գոտիները։ Նրանք բաժանված են պաշտպանական շերտերով՝ այգիներով։

Ժողովրդական իշխանության օրոք արմատապես վերակառուցվել ու գեղեցիկ տեսք են ընդունել՝ Վառնան, Բուրգասը, Պլովդիվը և մյուս քաղաքները։

Լայն ճակատով ծավալվել է բնակարանային շինարարությունը քաղաքներում և գյուղերում։ Բուլղարիայում մեծ ընդունում է գտել բնակելի կոմպլեքսների կառուցումը։

Ժողովրդական իշխանության տարիներին, տնտեսության շեշտակի վերելքի հիման վրա զգալի չափով բարձրացավ երկրի բնակչության բարեկեցությունը և կուլտուրական մակարդակը։ Երկրում անընդհատ աճում է ամբուլատորիաների, հիվանդանոցների, մանկամսուրների ու մանկապարտեզների ցանցը։

Բուլղարիայի ծովափնյա գեղատեսիլ վայրերում ժողովրդական իշխանության տարիներին կառուցվել ու շահագործման են հանձնվել բազմաթիվ հանգստյան տներ ու սանատորիաներ, որտեղ հանգստանում ու բուժվում են տասնյակ հազարավոր աշխատավորներ։ Վառնայի, Բորովիցիի և «Ոսկյա ավազների» առողջարանները հայտնի են ամբողջ աշխարհում։

Սոցիալիստական Բուլղարիան մեծ հաջողությունների է հասել ժողովրդական կրթության ասպարեզում։ Ռեսպուբլիկայում յուրաքանչյուր վեցերորդ մարդը սովորում է։

Կարճ ժամանակում աճել է երիտասարդ գիտական աշխատողների թիվը։ Բուլղարիայում այժմ գործում են 130 գիտահետազոտական հիմնարկներ։



Բուլղարիայի սոցիալիստական կուլտուրան, գրականությունն ու արվեստը հասել են իսկական ծաղկման։ Երկրում գործում են 47 օպերային և դրամատիկական թատրոններ։ Ժողովրդական իշխանության օրոք ստեղծվել են 11 սիմֆոնիկ նվագախումբ, 6 պետական երգչախումբ և ժողովրդական անսամբլ։

1962 թվականի նոյեմբերին կայացած Բուլղարիայի կոմունիստական պարտիայի 8-րդ համագումարը ուղիներ նշեց՝ երկրում սոցիալիզմի կառուցման ավարտման և սոցիալիզմից կոմունիզմին աստիճանաբար անցնելու մասին։

Բուլղարիայի կոմունիստական պարտիան և կառավարությունը վարում են խաղաղասիրական արտաքին քաղաքականություն։ Սովետական Միության և սոցիալիստական սիստեմի մյուս երկրների հետ ձեռք-ձեռքի տված, Բուլղարիան պայքարում է բոլոր պետությունների հետ խաղաղ գոյակցության ու բարեկամական փոխհարաբերություններ ստեղծելու համար։

Լիարյուն ստեղծագործական կյանքով է ապրում այսօր Բուլղարիայի աշխատասեր ժողովուրդը։ Նա ջանք չի խնայում իր երկրի և սոցիալիստական լագերի հետագա հզորացման, կոմունիզմի վեհ գաղափարների իրագործման համար։

ԱՐ. ԿԱՐԱՊԵՏՅԱՆ

# ԹԵՄԱՆԵՐ ԵՎ ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ ԱԳԻՏԱՏՈՐՆԵՐԻ ԶՐՈՒՅՑՆԵՐԻ ՀԱՄԱՐ

## 1. Սովետական մարդկանց գիտակցության կոմունիստական աշխարհայացքի ձևավորումը պարտիայի գաղափարական աշխատանքի կարևոր խնդիրն է

ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

Պարտիայի գաղափարական աշխատանքի հերթական խնդիրների մասին, *ՍՄԿՊ Կենտկոմի 1963 թվականի հունիսյան պլենումի որոշումը, տպագրված «Ս. Հ.»-ի 1963 թվականի հունիսի 23-ի համարում։*

*Ն. Ս. ԽՐՈՒՇՉՈՎ* — Մարքսիզմ-լենինիզմը մեր դրոշն է, մեր մարտական զենքը, *ճառ, արտասանած ՍՄԿՊ Կենտկոմի 1963 թվականի հունիսյան պլենումում, տպագրված «Ս. Հ.»-ի 1963 թվականի հունիսի 30-ի համարում։*

*Լ. Ֆ. ԻԼՅԻՉՈՎ* — Պարտիայի գաղափարական աշխատանքի հերթական խնդիրները, *զեկուցում ՍՄԿՊ Կենտկոմի 1963 թվականի հունիսյան պլենումում, տպագրված «Ս. Հ.»-ի 1963 թվականի հունիսի 19-ի և 20-ի համարներում։*

## 2. Աճում և ամրապնդվում է կոմունիստական աշխատանքի շարժումը

ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

Կոմունիզմը ամբողջ մարդկության պայծառ ապագան է, *ՍՄԿՊ ծրագրից։*

Կոմունիստական աշխատանքի շարժման առաջավորների համամիութենական խորհրդակցության մասնակիցների դիմումը, *տպագրված «Ս. Հ.»-ի 1963 թվականի ապրիլի 28-ի համարում։*

Է՛լ ավելի ծավալենք կոմունիստական աշխատանքի շարժումը *կոմունիստական աշխատանքի շարժման առաջավորների ռեսպուբլիկական չորրորդ հավաքը, տպագրված «Ս. Հ.»-ի 1963 թվականի օգոստոսի 24-ի համարում։*

Կոմունիստական աշխատանքի շարժման առաջավորների ռեսպուբլիկական հավաքի մասնակիցներին, *Հայաստանի կոմպարտիայի կենտկոմի ողջույնը, տպագրված «Ս. Հ.»-ի 1963 թվականի օգոստոսի 24-ի համարում։*

Ապագայի հետախույզների հիանալի շարժումը, *«Ս. Հ.»-ի 1963 թվականի օգոստոսի 22-ի առաջնորդողը։*

## 3. Բոլոր ուժերը մեծ քիմիայի զարգացման համար

ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

Քիմիան կոմունիզմի համար մղվող պայքարի հարվածային ճակատն է, *Անդրկովկասի քիմիագործների խորհրդակցության նյութերը, տպագրված «Ս. Հ.»-ի 1963 թվականի օգոստոսի 10-ի համարում։*

Քիմիական արդյունաբերության և ժողովրդական տնտեսության քիմիացման հետագա զարգացման հարցերին նվիրված Անդրկովկասյան խորհրդակցության մասնակիցների դիմումը, *տպագրված «Ս. Հ.»-ի 1963 թվականի օգոստոսի 10-ի համարում։*

Սինթետիկ նյութերն արմատավորել ինդուստրիայի մեջ և կենցաղում, *«Պրավդա» թերթի 1963 թվականի օգոստոսի 20-ի առաջնորդողը, տպագրված «Ս. Հ.»-ի 1963 թվականի օգոստոսի 21-ի համարում։*

## 4. Հացը մեր ժողովրդի հարստությունն է, դաշտում չթողնել ոչ մի հասկ

ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

Բարձր կազմակերպվածությամբ անցկացնենք բերքահավաքը և հացամթերումները, *խորհրդակցություն Հայաստանի կոմպարտիայի Կենտկոմում, տպագրված «Ս. Հ.»-ի 1963 թվականի օգոստոսի 6-ի համարում։*

Հացը ժողովրդական հարստություն է. *«Ս. Հ.»-ի 1963 թվականի օգոստոսի 24-ի առաջնորդողը։*

Հարազատ պետության հանդեպ պարտքը կատարելու օրինակ, *ինֆորմացիոն նյութեր ռեսպուբլիկայի կոլտնտեսություններում և սովխոզներում բերքահավաքի ընթացքի մասին, տպագրված «Ս. Հ.»-ի 1963 թվականի օգոստոսի 20-ի, 21-ի համարներում։*

Աշխատել առաջավորների օրինակով, *թղթակցություններ, տպագրված «Ս. Հ.»-ի 1963 թվականի օգոստոսի 17-ի համարում։*

Անձնվեր աշխատանքով ստեղծենք նյութական բարիքների առատություն, *նյութեր, տպագրված «Ս. Հ.»-ի 1963 թվականի օգոստոսի 15-ի համարում։*

## 5. Ետ մնացող կոլտնտեսությունները ու սովխոզները հասցնենք առաջավորներին, ոչ մի ետ մնացող տնտեսություն

*ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ*

Բարձրացնել ետ մնացող կոլտնտեսությունների և սովխոզների էկոնոմիկան, *«Ս. Հ»-ի 1963 թվականի օգոստոսի 16-ի առաջնորդողը։*

Ամբողջ գործը մարդկանց, ղեկավարման մեջ է, *նյութեր, տպագրված «Ս. Հ»-ի 1963 թվականի օգոստոսի 17-ի համարում։*

Ինչպես բարձրացավ Նռանոսի կոլտնտեսությունը, *հոդված, տպագրված «Ս. Հ.»-ի 1963 թվականի օգոստոսի 28-ի համարում։*

## 6. Պատվով ավարտենք կերի կուտակման աշխատանքները

*ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ*

Հանրային հոտը ապահովել կերի առատ պաշարով, *ՀԿՊ Կենտկոմում և Հայկական ՍՍՌ Մինիստրների սովետում, տպագրված «Ս. Հ.»-ի 1963 թվականի հունիսի 22-ի համարում։*

Անասնապահների անհետաձգելի հոգսերը, *«Պրավդա» թերթի 1963 թվականի հուլիսի 18-ի առաջնորդողը, տպագրված «Ս. Հ.»-ի 1963 թվականի հուլիսի 19-ի համարում։*

Կերի կուտակման վճռական օրերը, *«Ս. Հ.»-ի 1963 թվականի օգոստոսի 17-ի առաջնորդողը։*

Պատվով կատարենք մեր պարտքը հայրենիքի հանդեպ, *նյութեր, տպագրված «Ս. Հ.»-ի 1963 թվականի օգոստոսի 29-ի համարում։*

*Պ. ՍԱՖՅԱՆ—* Ստեղծում ենք կերի առատ պաշարներ, *հոդված, տպագրված «Հայաստանի գյուղատնտեսություն» ամսագրի 8-րդ համարում։*

*ՀԿՊ ԿԵՆՏԿՈՄԻ ՍՏ. ՇԱՀՈՒՄՅԱՆԻ ԱՆՎԱՆ ՔԱՂԱՔԱԿԱՆ ԼՈՒՍԱՎՈՐՈՒԹՅԱՆ ՌԵՍՊՈՒԲԼԻԿԱԿԱՆ ՏՈՒՆ*

## ՈՒՇԱԴՐՈՒԹՅՈՒՆ

*Հարգելի ագիտատո՛ր. Մոսկվայի «Դինամո» գործարանի փականագործների նշանավոր բրիգադիր Յուրի Կուդրյավցևը սեփական նախաձեռնությամբ մշակել է իր կյանքի և աշխատանքի հետևյալ նշանաբանը։ Կարդացեք այն և հայտնեք Ձեր կարծիքը խմբագրությանը։ Նրա նախաձեռնության մասին առանձին հոդված է տպագրված ՍՄԿՊ Կենտկոմի «Ագիտատոր» ամսագրի այս տարվա 14-րդ համարում։*

★ *Աշխատելով հասարակության համար, դու աշխատում ես քեզ համար։ Ժողովրդի համար աշխատելը մեծ երջանկություն է։*

★ *Քիչ է լինել հանձնարարված գործի լավ կատարող։ Ամբողջ գիտելիքներդ ու փորձդ դիր գործի մեջ։ Նորագույն տեխնիկայի գործադրումը յուրաքանչյուրի պարտքն է։*

★ *Բանվորական բոլյեն՝ ժողովրդական հարստություն է։ Գործարանում ամեն ինչ քոնն է, պահպանիր այդ ամենը։*

★ *Այն ամենը, ինչ արվում է քո ձեռքերով, պետք է լավագույնը լինի։ Խոտանը աշխատանքի մեջ, դա խայտառակություն է, խոտանարարը անհարմար դրության մեջ է դնում իր ընկերներին, կոլեկտիվին։ Աշխատողի խիղճը վեր է ամեն ինչից։*

★ *Շարունակ սովորիր։ Ուսումը գիտության մայրն է։ Գիտեցածդ սովորեցրու ընկերոջդ։ Եթե ետ ես մնում՝ օգնության կանչիր ընկերոջդ։ Ավելի լավ է հարցնել, քան քարշ գալ պոչից։*

★ *Գեղեցկություն մտցրու աշխատանքիդ և կյանքիդ մեջ։*

★ *Աշխատանքից փախչողը արտադրության թշնամին է։ Յուրաքանչյուր երիտասարդ արտադրողի նպատակն է դառնալ գործարանի կադրային բանվոր։ Խայտառակություն նրան, ով տեղից-տեղ է թռչում՝ միայն շատ փողի համար։*

★ *Կադրային բանվորը՝ սկսնակ բանվորի ընկերը, խորհրդատուն ու դաստիարակն է։ Սովորեցրու այնպես, որ ոչ քո և ոչ էլ մարդկանց առջև ամոթով չմնաս։*

★ Թող կորչի անտարբերությունը մարդկանց միջից։ Սխալվեց ընկերդ՝ ուղղիր նրան, իսկ դժբախտության մեջ՝ օգնիր։

★ Աշխատանքի մեջ, ընտանիքում, ընկերական շրջանում՝ հիշիր, որ դու բանվոր ես և մի արատավորիր քո բարձր կոչումը։

★ Այնտեղ, ուր հանդես է գալիս բանվորը, տեղ չունի խուլիգանը, հարբեցողը և ծրիակերը։

★ Դու ռևոլյուցիոն փառավոր տրադիցիաների ժառանգորդը և շարունակողն ես։ Կոլեկտիվի պատիվը՝ քո պատիվն է։ Դու պատասխանատու ես ողջ կոլեկտիվի համար, կոլեկտիվը՝ քեզ համար։

ԱԳԻՏԱՏՈՐԻ ԲԱՌԱՐԱՆ

## „ԲԱԱՍ“ ՊԱՐՏԻԱ

Վերջին ժամանակաշրջանում մամուլում սկսել է երևալ «բաաս» պարտիա և բաասիստներ անունը։ Ինչ բան է «բաաս» պարտիան և ովքեր են բաասիստները։ «Բաաս» պարտիան դա ռեակցիոն քաղաքական պարտիա է, որը ուժեղ դիրքեր ունի Սիրիայի, Իրաքի ներկայիս կառավարության մեջ։ Իսկ բաասիստները այդ ռեակցիոն պարտիայի անդամներն են։

«Բաասը» «արաբական վերածնունդ սոցիալիստական պարտիայի» կրճատ անվանումն է։ Այդ պարտիան ստեղծվել է 1953 թվականին, Սիրիայում, արաբական սոցիալիստական և արաբական վերածնունդ պարտիաների միավորման հետևանքով։ «Բաաս» պարտիայի անդամները կամ ինչպես ընդունված է անվանել բաասիստները, իրենց առջև խնդիր են դրել՝ ստեղծել միացյալ արաբական պետություն՝ «Ատլանտյան օվկիանոսից մինչև Պարսկական ծոցը»։ Բաասիստները ձգտում են լինել ոչ միայն Սիրիայի, այլև արաբական մյուս երկրների ներկայացուցիչները, հատկապես Իրաքի, Հորդանանի և Լիբանանի, որտեղ նրանք արդեն ստեղծել են իրենց պարտիայի բաժանմունքները։

Բաասիստները կեղծավորաբար հայտարարում են,



թե իբր իրենք սոցիալիստական սկզբունքների կողմնակիցներ են։ Բայց իրականում նրանք արաբական արևելքում տեղի ունեցող բոլոր դեմոկրատական շարժումների կատաղի թշնամիներն են։ Օրինակ, երբ Հորդանանում տապալվեց ազգային կառավարությունը, բաասիստները դաժան դատաստան տեսան Հորդանանի հայրենասերների հետ, մատնեցին նրանց ոստիկանության ձեռքը, սպանեցին և բանտերը քշեցին նրանց։

Ղեկավար դիրք գրավելով Իրաքի կառավարության մեջ, բաասիստները ավելի տմարդի ու ավելի դաժանությամբ վերաբերվեցին կոմունիստների նկատմամբ։ Նրանք մասսայական ռեպրեսիա և տեռորիստական ակտեր կատարեցին կոմունիստների նկատմամբ։ Իրաքի բանտերը լցվեցին հազարավոր կոմունիստներով և երկրի դեմոկրատական ու հայրենասիրական կազմակերպությունների գործիչներով։ Դրանով չբավականացան արյունառուշտ բաասիստները։ Նրանք մահվան դատապարտեցին Իրաքի կոմունիստական պարտիայի Կենտկոմի առաջին քարտուղար Սալյամա Ադիլին և պարտիայի երկու ականավոր գործիչների։ Այդ հրեշավոր չարագործությունը ցնցեց ամբողջ աշխարհի պրոգրեսիվ մարդկությանը, որոնք անարգանքի սյունին գամեցին մարդասպան բաասիստներին։ «Բաաս» պարտիան չարագործություններ է անում նաև քուրդ ժողովրդի նկատմամբ։ Իրաքի ներկայիս կառավարությունը, որին ղեկավարում են բաասիստները, բնաջնջող պատերազմ է սկսել քրդերի դեմ։ Կառավարական զորքերը պարբերաբար ռմբակոծում և հրկիզում են քրդական գյուղերը, գնդակահարում անմեղ մարդկանց։

Ինդեքս 77304

## ՍՐԱՄԻՏ ԽՈՍՔԵՐ

### Ժամանակակից սրամտություններ

*Նա լավ հիշողություն ունի, հիշում է բոլոր նրանց, ովքեր քննադատել են իրեն։*

—•—

*Նա ճանաչում է մարդկանց, միայն թե ով կարող է պետքական լինել և ով՝ ոչ։*

—•—

*Մնողները տվին նրան, ինչ ունեին։ Այն ինչ էլ, որ մնաց, նա ինքը վերցրեց։*

—•—

*Կշեռքի օգնությամբ ոչ միայն կշռում են, այլև թերակշռում։*

—•—

*Գիշերը կարճացնում են նրանք, ովքեր ոչինչ չունեն անելու ցերեկը։*

—•—

*Գործի մեջ խորասուզվելու համար, հարկավոր է լողալ դրանց մեջ։*

—•—

*Առաջին նկատողությունը երբեմն տալիս են նրա համար, որպեսզի նախազգուշացնեն երկրորդի տալը։*

—•—

*Նախքան քո ելույթը ուրիշներին կարդալը, կարդա ինքդ քեզ։*

**Խմբագիր՝ Վ. Խ. ԵՆԳԻԲԱՐՅԱՆ**

**Отдел идеологической работы ЦК КП Армении**

**АГИТАТОРИ БЛОКНОТ**

**№ 17**

**1963**

*ՎՖ 10410* — *Պատվեր 813* — *Տիրաժ 8025*

*Հանձնված է արտադրության 26/VIII 1963 թ.*
*Ստորագրված է տպագրության 4/IX 1963 թ.*

*ՀՍՍՌ Կուլտուրայի մինիստրության Պոլիգրաֆարդյունաբերության և հրատարակչությունների գլխավոր վարչության II տպարան, Երևան, Կնունյանցի № 8։*

*Գինը 8 կոպ.։*